Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք


Հ Կ (բ) Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ


# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 10 (29)


«ՍՈՎԵՏԱԿԱՆ ՀԱՅԱՍՏԱՆ» ԹԵՐԹԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
1945

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ

## № 10 (29)



«Սովետական Հայաստան» թերթի
հրատարակչություն
1945

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



## ԱՐՏԱԴՐԱԿԱՆ ՀԱՐՑԵՐ

### *ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ԵՎ ՏՐԱՆՍՊՈՐՏԻ ԽԻԶԱԽ ՆՈՎԱՏՈՐՆԵՐԸ*

*Աշխատանքի արտադրողականության բարձրացումը միշտ եղել է և մնում է մեր երկրի ժողովրդական տնտեսության զարգացման հրատապ ու անսպառ աղբյուրը: «Աշխատանքի արտադրողականությունը,— սովորեցրել է մեծ Լենինը,— դա, վերջին հաշվով, ամենակարևորն է, ամենագլխավորը նոր հասարակարգի հաղթանակի համար»:*

*Հաղթական հայրենական պատերազմի տարիներում մեր երկրում վիթխարի չափով աճեց աշխատանքի արտադրողականությունը, աննախընթաց թափով հորդեց մասսաների ստեղծագործ նախաձեռնությունը՝ նովատորների շարժումը: Սովետական հայրենասիրության կենարար ուժը Սովետական Միության բանվոր դասակարգին մղում էր դեպի աշխատանքային նորա-*

նոր սխրագործությունների: Մեր երկրի բանվորները և բանվորուհիները իրենց հնարամտություններով ամեն օր բազմաթիվ գյուտեր էին կատարում աշխատանքի արտադրողականությունը բարձրացնելու գործում, պայքարում էին հումքի, վառելանյութի ու էլեկտրոէներգիայի առավելագույն խնայողության համար:

«Մեր բանվոր դասակարգը իր բոլոր ուժերը նվիրաբերում է հաղթանակի գործին, անընդհատ կատարելագործում է արտադրության տեխնիկան, ավելացնում արդյունաբերական ձեռնարկությունների հզորությունը, կառուցում նորանոր ֆաբրիկաներ ու գործարաններ: Սովետական Միության բանվոր դասակարգը աշխատանքային մեծ սխրագործություն կատարեց այս պատերազմում»: Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 27-րդ տարեդարձին տված իր պատմական զեկուցման մեջ ընկեր Ստալինը այսպիսի բարձր գնահատականի արժանացրեց ՍՍՌՄ բանվոր դասակարգին, որը թիկունքի բոլոր աշխատավորների հետ միասին ապահովեց մեր հայրենիքի ռազմատնտեսական հաղթանակը թշնամու դեմ:



Սովետական ժողովրդի Հայրենական մեծ պատերազմը լիակատար հաղթանակով պսակվեց: Պատերազմի ժամանակաշրջանը Եվրոպայում վերջացավ հիտլերյան Գերմանիայի պարտությամբ, գերմանական զինված ուժերի լիակատար կապիտուլյացիայով: Մեր հայրենիքի ազատության և անկախության համար ցուցաբերած հերոսական աշխատանքը, մեծ զոհաբերությունները հաղթանակի փառքով պսակվեցին, մեր երկրի համար սկսվեց խաղաղ զարգացման ժամանակաշրջան:

Մայիսի 1-ին, պատմական մեծ հաղթանակի նախօրյակին, ընկեր Ստալինը դիմելով Սովետական Միության աշխատավորներին, կոչ արեց. «... Արագ բուժեցեք այն վերքերը, որ պատերազմը հասցրել է երկրին, է՛լ ավելի բարձրացրեք մեր սովետական պետության հզորությունը»: Մայիսի 9-ի պատմական օրը ընկեր Ստալինը ավետեց ամբողջ աշխարհին սովետական ժողովրդի մեծ հաղթանակի լուրը:

Ստալինյան յուրաքանչյուր ելույթը սովետական ժողովուրդը դիմավորում է հայրենասիրական նորանոր նախաձեռնություններով, իր հարազատ հայրենիքի հզորու-

թյունը է՛լ ավելի ամրացնող նորանոր գործերով:

Հարազատ առաջնորդից ընդունելով այդ անգնահատելի պարգևը, Սովետական Միության բազմազգ ժողովուրդները մեծ հաղթանակի առթիվ երդվեցին՝ ետպատերազմյան ժամանակաշրջանում նոր, ավելի բարձր աստիճանի հասցնել Հայրենական մեծ պատերազմում ցուցաբերած իրենց միասնությունը և կազմակերպվածությունը, ավելի կուռ համախմբվել Լենին-Ստալինի պարտիայի ու սովետական պետության շուրջը, իրենց բոլոր ուժերը, ստեղծագործական բոլոր կարողությունները կենտրոնացնել մեր Հայրենիքի հզորության հետագա է՛լ ավելի արագ վերելքի համար:

Ինչպես ամբողջ Միության, այնպես է՛լ մեր ռեսպուբլիկայի գործարաններում և երկաթուղային տրանսպորտում աշխատող բանվորներն ու բանվորուհիները այժմ ստեղծագործական մեծ ոգևորություն են ապրում: Ստախանովական-նովատորները ուժեղացնում են պայքարը արտադրության տեխնոլոգիական պրոցեսների ռացիոնալացման համար, կատարելագործում են աշխատանքի կազմակերպումը,



փոքրաթիվ բանվորական ձեռքերով ձգտում են կատարել ավելի շատ աշխատանք, ավելի շատ արտադրանք տալ երկրին:

Ուրալյան տանկաշինական գործարանի բրիգադիր-նովատոր Եգոր Ագարկովը, կատարելագործելով արտադրության կազմակերպումը, հնարավորություն տվեց միավորել աշխատանքի բազմաթիվ անջատ տեղամասեր, ցեխեր, բրիգադներ: Դա այն արդյունքն ունեցավ, որ մի կողմից բարձրացավ արտադրության հրամանատարների դերը, մյուս կողմից հնարավորություն տվեց արտադրության տվյալ ճյուղից ազատել և այլ տեղամասեր տեղափոխել բազմաթիվ բանվորներ, վարպետներ, բրիգադիրներ, տեխնիկներ ու ինժեներներ: Օրինակ՝ այն ցեխում, որտեղ աշխատում էր Եգոր Ագարկովը, կար երկու բրիգադա: Նրանցից մեկը տանկային աշտարակների ձուլումն էր կատարում, մյուսը՝ մոնտաժ (հավաքում): Յոթական հոգուց կազմված այդ փոքրաթիվ բրիգադները, բացի բրիգադիրներից, ունեին հերթափոխային և ավագ վարպետներ: Ագարկովը՝ խորը թափանցելով աշխատանքի կազմակերպման

հարցերի մեջ՝ առաջարկեց տանկային աշտարակների պատրաստման երկու տեղամասերը միացնել, որի հետևանքով աշխատանքից ազատվեցին և գործարանում այլ աշխատանքի տեղափոխվեցին երկու բրիգադաներ, երկու հերթափոխային վարպետ, մեկ ավագ վարպետ, հինգ ձուլող վարպետ։ Կազմակերպական այդ վերակառուցումը կենտրոնացրեց արտադրության ղեկավարությունը, վերացրեց պարապուրդները և բարձրացրեց աշխատանքի արտադրողականությունը։

Մեր ռեսպուբլիկայի արդյունաբերական ձեռնարկություններից Կարի առաջին գործարանը առաջիններից էր, որ սկսեց աշխատանքը վերակառուցել Եգոր Ագարկովի օրինակով։ Երկար ժամանակ գործարանը թերակատարում էր իր արտադրական պլանները։ Թվում էր՝ թե ելք չկա։ Բայց ահա այստեղ էլ գտնվեցին խիզախ նովատորներ, որոնք ցույց տվեցին, որ անհամեմատ ավելի փոքրաթիվ մարդկանցով կարելի է կատարել ավելի շատ աշխատանք։ Ծնվանի ստախանովականներ Զ. Դավթյանը, Ե. Լաֆոյանը և Վ. Հունանյանը առաջարկեցին՝ մի շարք պրոֆեսիաներ համատեղել, խոշորացնել բրիգադաները, կատարել մասնագիտական ուժերի վերաբաշխում։ Նրանց առաջարկությունը պարտիական, պրոֆմիութենական կոմիտեներում և գործարանի արտադրական ընդլայնած խորհրդակցությունում քննվեց ու հավանության գտավ։ Դիրեկցիայի կողմից ընդունվեց այն և հրամանով ձևակերպվեց առաջարկված վերակառուցումը։ Այժմ արդեն Կարի առաջին գործարանում որակյալ բանվորական ուժի պակաս չի զգացվում, պարապուրդների պատճառով չի ընդհատվում արտադրության շղթան, ընդհակառակը, 6 տոկոսով բարձրացել է աշխատանքի արտադրողականությունը, կատարվում ու գերակատարվում են արտադրական առաջադրանքները։

Թեև այլ մեթոդով, բայց նույն նպատակին է հասել Լենինականի տեքստիլ կոմբինատի Գործվածքային գործարանի 5-րդ կորպուսի ստախանովական ենթավարպետ Մ. Սերոբյանը։ Վերջերս նա նորմայով նախատեսված 40 դազգահից անցավ 168 դազգահի սպասարկման, որը համարվում է տեքստիլ արդյունաբերու-

թյան մեջ աշխատանքի ամենաբարձր խտացվածությունը: Սերոբյանի օրինակին հետևեցին կորպուսի մյուս ենթավարպետները, և այժմ 5-րդ կորպուսը անհամեմատ քիչ ենթավարպետներով կատարում ու գերակատարում է արտադրական առաջադրանքները՝ տալով հումքի 25 տոկոս տնտեսում:

Եգոր Ազարկովի մեթոդի կիրառումը փայլուն արդյունքներ է տալիս նաև Երևանի Ձեթ-Օճառ կոմբինատում, Կիրովականի Ա. Մյասնիկյանի անվան գործարանում, Հայէլեկտրոյի կենտրոնական լաբորատորիայում և այլ ձեռնարկություններում:

Տուլայի երկաթուղային մեքենավար Դըմիտրի Կորոբկովը Սովետական Միության երկաթուղայինների մոտ նովատորի հռչակ ձեռք բերեց այն խիզախ նախաձեռնության շնորհիվ, որ նա համարձակ կերպով շոգեքարշի ջեռուցման համար սկսեց օգտագործել Մերձմոսկովյան գորշ ածուխը և հասավ տեխնիկական այնպիսի արագության, որին կարող են նախանձել բարձր կալորիայի քարածուխով աշխատող շոգեքարշերի բոլոր մեքենավարները: Կորոբկովի նման նախաձեռնող մարդիկ քիչ չեն նաև



մեր ռեսպուբլիկայի երկաթուղային տրանսպորտում: Երկաթուղու 6-րդ բաժանմունքում աշխատող Սանահինի շոգեքարշային դեպոյի մեքենավարներ՝ Մ. Մարտիրոսյանը, Անուշավան Տիտանյանը, Միքայել Թամազյանը և Վասիլի Գորդինը, գընացքները վարում են — բարձր արագությամբ, նախատեսված 25.000 կիլոմետրի փոխարեն վազքի ամսական նորման հասցրել են 40.000 կիլոմետրի՝ 60 տոկոսով բարձրացնելով լոկոմոտիվի շահավետ օգտագործումը: Այդ նովատորների հնարամտության շնորհիվ դեպոն վառելանյութի մեծ տնտեսում է կատարում: Ո՞րն է Տուլայի մեքենավար Կորոբկովին և Սանահինի անվանի մեքենավարներին միացնող ընդհանուրը՝ այն, որ նրանք բոլորն էլ սովետական բոցավառ հայրենասերներ են, իրենց ընագավառի խիզախ նովատորներ, որոնք բացի իրենց գյուտարարական ձեռնարկումներից տնտեսում են վառելանյութը՝ լինի այդ ածուխ կամ մազութ, և բարձրացնում են շոգեքարշի տեխնիկական արագությունը:

Անվանի վարպետ, սովետական հայրենա-

ներ երիտասարդության լավագույն ներկայացուցիչներից մեկը՝ Վիկտոր Կրասնիկովը վերափոխելով բոլորի կողմից կատարյալ համարվող տեխնիկական սարքավորումները և ավելի կատարելագործելով այն՝ իր բրիգադայով պլանից դուրս Հայրենիքին տալիս է հազարավոր ռուբլիների ավելի արտադրանք: Կիրեևսկյան հանքերի ածխահատ Պավել Պոժարովը 1944 թ. ընթացքում կատարեց 5 տարվա նորմա՝ կատարելագործելով ածխահանման հանրածանոթ տեխնիկան: Կրասնիկովից և Պոժարովից հարյուրավոր կիլոմետր հեռու, Ղափանի գլխավոր հանքերում աշխատող ստախանովական հանքափոր Ա. Սարոյը՝ կատարելագործելով իր մեխանիկական մուրճը, հանքահանման աշխատանքի արտադրողականությունը բարձրացրել է մի քանի անգամ: Ղափանի պղնձահանքերում բարձր արտադրողական աշխատանքի վարպետ է նաև Իվան Ռոժկովը: Նա աշխատում է բազմահանքափորչային մեթոդով՝ մեկ հերթափոխում վարելով 3—4 հանքափորչ, երբեք իր մեխանիկական մուրճը նորոգման չտալով: Անցյալ տարի Ռոժկովը կատարեց երեք տարվա արտադրական



նորմա, իսկ այս տարի ամսվա առաջադրանքները կատարում է 300—350 տոկոսով:

Բազմաթիվ են սոցիալիստական արդյունաբերության և տրանսպորտի խիզախ նովատորները՝ մեր Հայրենիքի նախաձեռնող, հնարամիտ մարդիկ: Հանդիսանալով բարձր արտադրողական աշխատանքի նախաձեռնողները, նրանք ձգտում են իրենց գիտելիքները, վարպետությունը և փորձը հաղորդել բանվորների ավելի լայն շրջաններին: Նրանց աշխատանքային ընկերները մեծ սիրով սովորում են իրենց տաղանդավոր վարպետներից:

Արդյունաբերության և տրանսպորտի բնագավառում աշխատող մեր ագիտատորների առաջնահերթ խնդիրներից մեկն է լայնորեն մասսայականացնել արտադրության տեխնիկան կատարելագործող ու աշխատանքի կազմակերպումը բարելավող նովատորների ստեղծագործական հարուստ փորձը, այն ընդհանրացնել, դարձնել բոլոր բանվորների, ամբողջ ձեռնարկության սեփականությունը: Յուրաքանչյուր ագիտատորից պահանջվում է՝ ամեն կերպ օգնել տեղի պարտիական, պրոֆմիութենա-

կան կազմակերպություններին և տնտեսա-
կան ղեկավարներին: Ցեխում, բրիգա-
դում, հանքում, երկաթուղային վերանո-
րոգման արհեստանոցում կամ դեպոյում
մեր ստախանովական-նովատորների ամենա-
մտերիմ անձնավորությունը հանդիսանա-
լու է ագիտատորը: Նա պետք է ամենօրյա
սերտ կապ հաստատի արտադրության ա-
ռաջավոր մարդկանց հետ, ունկնդիրների նր-
րանց մտահոգություններին, ամեն կերպ օգ-
նի պետական-տնտեսական նշանակություն
ունեցող խնդրի առաջարկությունների
մասսայական կիրառմանը: Անհրաժեշտ է
հաճախ ագիտացիան ժամը նվիրել արտա-
դրական խնդիրներին և ունկնդիրներին հա-
ղորդել տեխնիկայի նորությունները: Զա-
վազանց խրախուսելի կլինի, եթե ագիտա-
ցիան ժամին, որպես օգնա ագիտատոր,
հրավիրվեն ինքը՝ գյուտարարը կամ ռացիո-
նալիզատորը՝ հավաքված բանվորներին ու
բանվորուհիներին տեխնիկական իր նորա-
մուծության, աշխատանքի կազմակերպման
առաջավոր մեթոդի մասին պատմելու հա-
մար: Արտադրության անվանի մարդկանց՝
ստախանովականների աշխատանքի փորձը
յուրացնելու նպատակով կարելի է էքսկուր-



սիոն այցելություններ կազմակերպել նույն
գործարանի տարբեր ցեխերը կամ հարևան
գործարանները: Լավ է այն ագիտատորը,
որը փորձի փոխանակման գործում լայնո-
րեն կներգրավի ինժեներա-տեխնիկական
պերսոնալի կարող ուժերին, կօգտագործի
արտադրական խորհրդակցությունները, լի-
ստովկաները, պատի թերթերը և այլն:

Ագիտատորները պետք է հանդիսանան
սոցիալիստական արդյունաբերության և
տրանսպորտի ստախանովական-նովատորնե-
րի ստեղծագործ նախաձեռնությունների
խրախուսողներն ու տարածողները՝ մեր
հայրենիքի արտադրողական ուժերը զար-
գացնելու, նրա հզորությունն էլ ավելի
բարձրացնելու առաջամարտիկները:

ԱՐՇ. ՍԻՄՈՆՅԱՆ

---

# ԱԳԻՏԱՏՈՐԸ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊԻՉՆ Է

*Ինչպես մեր ամբողջ ժողովրդական տնտեսության մեջ, այնպես էլ սոցիալիստական գյուղատնտեսության բնագավառում Հայրենական պատերազմի տարիներին սոցիալիստական մրցությունը վիթխարի թափ ու ծավալ ստացավ: Նա դարձավ կոլխոզային մասսաների համար անսպառ եռանդի, աշխատանքային մասսայական սխրագործությունների հորդառատ աղբյուր: Գերագույն Գլխավոր Հրամանատար Սովետական Միության Մարշալ ընկեր Ստալինի յուրաքանչյուր հրամանն ու զեկուցումը կոլխոզային գյուղացիության մեջ առաջ էր բերում հայրենասիրական նորանոր նախաձեռնություններ, աշխատանքային նոր վերելք: Ռազմաճակատում հերոսական Կարմիր Բանակի փառավոր հաղթանակներին կոլխոզային գյուղացիությունը պատասխանում էր աշխատանքային ճակատում տարած հաղթանակներով: Հայրենական պատերազմի պատմության մեջ արժանի տեղ կգրավի այն հոյակապ նախաձեռնությունը, այն գործարար մրցությունը, որ անցյալ տարի վիթխարի ուժով ծավալվեց սովետական գյուղում՝ հարազատ պետության հանդեպ ունեցած պարտավորությունները ժամկետից շուտ կատարելու և Կարմիր Բանակի պարենային ֆոնդին պլանից դուրս հացահատիկ հանձնելու համար: Այդ մրցությունից Հայաստանի կոլխոզնիկներն ու կոլխոզնիկուհիները պատվով դուրս եկան: Նրանք ժամկետից առաջ կատարեցին պետական բոլոր պարտավորությունները և Կարմիր Բանակի ֆոնդին պլանից դուրս հանձնեցին 200 հազար փութ հացահատիկ:*

*Արդեն երրորդ տարին է, որ համամիութենական սոցիալիստական մրցություն է ծավալվում Սովետական Միության բոլոր մարզերի, երկրամասերի ու ռեսպուբլիկաների միջև՝ բարձր բերք ստանալու և կոլխոզային անասնաբուծությունը զարգացնելու համար: Այդ նույն նպատակի համար համամիութենական սոցիալիստական մրցություն է ծավալվում նաև շրջանների միջև: Այդ մրցության մեջ անցյալ տարի*

Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան լավ տեղ գրավեց: Քննելով սոցիալիստական մրցության 1944 թվի արդյունքները, ՍՍՌՄ Ժողկոմսովետը նշեց նաև Հայկական ՍՍՌ-ի տարած լավ աշխատանքը՝ գյուղատնտեսական բոլոր աշխատանքների պլանը կատարելու և պետական հանձնումների ու ՄՏ կայանների աշխատանքի համար բնավարձ վճարելու ասպարեզում: Մեր ռեսպուբլիկան այդպիսի լավ գնահատական ստացավ նաև կոլխոզային անասնաբուծության վերելքի գծով ծավալված համամիութենական սոցիալիստական մրցության մեջ: Համամիութենական սոցիալիստական մրցության մեջ առաջավոր տեղ գրավեց հատկապես Ստեփանավանի շրջանը, որը երեք անգամ նվաճեց Պաշտպանության Պետական Կոմիտեի փոխանցիկ Կարմիր Դրոշը:

Անցյալ տարի մեծ ու լայն թափ ստացավ նաև կոլխոզների սոցիալիստական մրցությունը: Ամենուրեք եռանդուն պայքար սկսվեց այդ մրցությունից հաղթող դուրս գալու և Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետի փոխանցիկ Կարմիր Դրոշը նվաճելու համար: Ամփոփելով այդ մրցության



արդյունքները, Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը հաղթողներին փոխանցիկ Կարմիր դրոշներ հանձնելու հետ միասին նշեց նաև մի քանի տասնյակ կոլխոզների լավ աշխատանքը:

Մեծ, շատ մեծ է սոցիալիստական մրցության ուժը. մեծ են ու նշանակալից այդ մրցության արդյունքները: «Գյուղատնտեսության մեջ,— գրում է «Պրավդան»,— սոցիալիստական մրցության հաջողությունները մեր գյուղացիության կատարած աշխատանքային սխրագործությունների պանծալի տարեգրությունն են: Դրանց մեջ, ինչպես հայելու մեջ արտացոլում են մեր գյուղում կատարվող կենարար պրոցեսները: Դրանց մեջ իրենց մարմնավորումն են գտնում մեր հողագործության ընդերքում թաքնված անսպառ ուժերը»: Իսկ այդ ուժերը Հայրենական պատերազմի տարիներին ավելի լայն չափերով դրսևորվեցին, այդ ուժերը անսպառ են: Վերցնենք օրինակ Նոր Բայազետի շրջանը: Անցյալ տարի այդ շրջանի կոլխոզներից միայն մեկը՝ Փաշաքենդ գյուղի կոլխոզը հավաքեց կարտոֆիլի այնքան բերք, որքան հավաքում էր ամբողջ շրջանը պատե-

բազմից առաջ, կամ այլ կերպ ասած մոտ չորս անգամ ավելացավ կարտոֆիլի բերքը: Բայազետի շրջանի օրինակը իհարկե եզակի չէ: Անցյալ տարի սոցիալիստական մրցության մեջ լավ օրինակ ցույց տվեցին նաև Դուզքենդի շրջանի ճակնդեղագործները, Շամշադինի շրջանի ծխախոտագործները, Ստեփանավանի շրջանի անասնաբույծները և այլն: Սոցիալիստական մրցությունը ծնեց բարձր բերքի հարյուրավոր նոր վարպետներ, որոնցից շատերի անունները լայնորեն հայտնի են մեր ամբողջ ռեսպուբլիկայում: Ղամարլուի շրջանի Արտաշատ գյուղի կոլխոզից օղակավարուհի Ծիածան Ասլիյանի օղակը իր մշակած հողերից միջին հաշվով հեկտարից 50 ցենտներ բամբակ ստացավ, իսկ ամբողջ կոլխոզում բամբակի միջին բերքատվությունը հասավ ավելի քան 22 ցենտների: Դուզքենդի շրջանի Օջաղուլի գյուղի կոլխոզից օղակավարուհի Դուխո Խաչատրյանը իր մշակած հողերում շաքարի ճակնդեղի միջին բերքատվությունը հասցրեց ավելի քան 500 ցենտների: Մարտունու շրջանի Ծովինար գյուղի կոլխոզում շքանշանակիր բրիգադիր Հայրապետ Սիմոնյանը 13 հեկտար տարածության աշ-



նանացան ցորենի միջին բերքատվությունը հեկտարից հասցրեց 53 ցենտների: Ծխախոտի շատ լավ բերք աճեցրին Շամշադինի շրջանի Մովսես գյուղի կոլխոզնիկները: Այստեղ օղակավարուհի Վարդուշ Խոջոյանի օղակը յուրաքանչյուր հեկտարից հավաքեց 28 ցենտներ ծխախոտ:

Սակայն որքան էլ մեծ լինեն անցյալի հաջողությունները, դրանք մեզ չեն կարող բավարարել, դրանք չեն կարող չափանիշ լինել մեր այսօրվա աշխատանքի համար: «Մենք պետք է մեր ջանքերը չափենք ոչ թե երեկվա օրվա հետ, այլ այսօրվա առաջադրանքի հետ» («Պրավդա»): Հայրենական պատերազմը հաղթանակով ավարտելուց հետո, այժմ, խաղաղ զարգացման ժամանակաշրջանում մեր գլխավոր խնդիրն է համառ ու անխոնջ աշխատանքով արագորեն բուժել մեր երկրին պատերազմի պատճառած վերքերը, ավելի բարձրացնել մեր սովետական պետության հզորությունը: Հենց այդ նպատակին պետք է ուղղված լինի այժմ սոցիալիստական մրցության հզոր ու ստեղծարար ուժը: Նա պետք է նոր թափ տա կոլխոզային գյուղատնտ-

տնտեսության բոլոր ճյուղերում: Սոցիալիստական մրցության անցյալ տարվա արդյունքները վկայում են, որ ոչ միայն ետ մնացող, այլև առաջավոր շրջանների ու կոլխոզները չօգտագործված հսկայական հնարավորություն ունեն դաշտերի բերքատվությունը բարձրացնելու և հանրային անասունների գլխաքանակն ու մթերատվությունը ավելացնելու համար: Այս մասին են վկայում նաև մեր շատ առաջավոր կոլխոզների և ՄՏ կայանների այս տարվա գարնանացանի ընթացքում կատարած աշխատանքի արդյունքները: Բավական է միայն ասել, որ չնայած գարնան ուշ բացվելուն և ոչ բարենպաստ եղանակներին, բամբակի ցանքը ավարտվեց ավելի շուտ, քան անցյալ տարի: Հոկտեմբերյանի, Ղամարլուի, Բասարգեչարի, Ստեփանավանի տրակտորիստները բարձր արտադրողականության հրաշալի օրինակ ցույց տվին:

Գյուղատնտեսական աշխատանքների 1945 թվի պլանի վերաբերյալ ընդունված որոշմամբ Հայկական ՍՍՌ Ժողկոմսովետը և Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմը պատասխանատու առաջադրանքներ են սահմանել մեր կոլխոզների և ՄՏ կայանների համար:



Այդ առաջադրանքների անթերի կատարումը պետք է դրված լինի սոցիալիստական մրցության հիմքում, մրցության ամեն մի մասնակցի աշխատանքի հիմքում: Եվ որքան լավ կազմակերպվի այդ մրցությունը, որքան գործարար բնույթ կրի նա, այնքան լավ կիրագործվեն յուրաքանչյուր կոլխոզի ու ՄՏ կայանի, տրակտորային ու դաշտավարական բրիգադայի և օղակի առջև դրված խնդիրները: Այս տեսակետից շատ լուրջ ու պատասխանատու խնդիր է դրված մեր գյուղական ագիտատորների առջև: Սոցիալիստական մրցության կազմակերպումն ու ղեկավարումը քաղաքական-մասսայական աշխատանքի շատ կարևոր ու բաղկացուցիչ մասն է: Ագիտատորի կատարած աշխատանքը բրիգադայում կամ օղակում չի կարող լիարժեք լինել, եթե նա սոցմրցություն չի կազմակերպում կոլխոզնիկների ու կոլխոզնիկուհիների միջև՝ իրենց տրված առաջադրանքներն օրինակելիորեն կատարելու համար, և ընդհակառակը, լիարժեք ու արդյունավետ է դառնում ագիտատորի աշխատանքը այն դեպքում, երբ նա իր յուրաքանչյուր զրույցը, հաղորդումը կամ թերթի

ընթերցումը շաղկապում է բրիգադայի կամ օղակի առջև դրված օրվա խնդիրների հետ:

Ինչպե՞ս պետք է կազմակերպել իսկական, բոլշևիկյան գործարար մրցությունը և ինչո՞ւմ պետք է արտահայտվի ագիտատորի դերը: Նախ և առաջ պարտկազմակերպության հանձնարարությամբ ագիտատորը բրիգադիրի կամ օղակավարի հետ միասին կոլխոզնիկներին պետք է պարզաբանի բրիգադային կամ օղակին տրված առաջադրանքները: Այնուհետև նա պետք է բացատրի, թե ինչպիսի մեծ նշանակություն ունի սոցիալիստական մրցությունը այդ առաջադրանքները օրինակելիորեն կատարելու համար: Հենց այստեղ էլ պետք է մշակել պարտավորություններ, ինչպես ամբողջ բրիգադայի կամ օղակի, այնպես էլ առանձին կոլխոզնիկների համար: Պետք է խուսափել բոլոր բրիգադաների, օղակների և կոլխոզնիկների համար միատեսակ, ստանդարտ պայմանագրեր ու պարտավորություններ կազմելուց: Դրանք պետք է տարբերվեն իրարից հենց այն պատճառով, որ բրիգադաները ունեն տարբեր առաջադրանքներ, տարբեր կարողության աշխատողներ, որոնց տեղերում էլ աշխատանքի տարբեր



պայմաններ: Սոցիալիստական պարտավորությունները պետք է լինեն ռեալ, յուրաքանչյուր բրիգադայի, օղակի և կոլխոզնիկի տրված արտադրական առաջադրանքներին համապատասխան, այդ առաջադրանքները լավագույն ձևով կատարելու և գերկատարելու խոստումով մրցության մասնակցի կողմից:

Սոցիալիստական մրցության ընթացքում ագիտատորի գլխավոր խնդիրը կայանում է նրանում, որ նա ամենօրյա քաղաքական-մասսայական աշխատանքով բորբոքի մրցության կրակը: Նա պետք է ձգտի այն բանին, որ օր՜օրին իրականացվեն բրիգադայի, օղակի և ամեն մի կոլխոզնիկի կողմից ստանձնված պարտավորությունները: Հենց դա է մրցության գլխավոր կողմը: Այդ նպատակով ագիտատորը ոչ միայն մշտապես պետք է տեղյակ լինի պարտավորությունների կատարման ընթացքին, այլև հատուկ ուշադրություն պետք է նվիրի այդ պարտավորությունների կատարման ստուգման գործին: Իսկ դրա համար աշխատանքի շատ ձևեր կան: Այդ ստուգումը կարելի է կատարել փոխադարձաբար, առաջավոր կոլխոզնիկներից կազմ-

ված հանձնաժողովների միջոցով, բրիգա-
դայում կամ օղակում կարելի է լսել առան-
ձին կոլխոզնիկների, բրիգադիրի կամ օղա-
կավարի զեկուցումը՝ պարտավորություն-
ների կատարման ընթացքի մասին և այլն:
Ստուգման արդյունքները պետք է անպայ-
ման քննության առնել և համապատասխան
գործնական հետևություններ անել դրան-
ցից:

Սոցիալիստական մրցությունը խթանելու
համար վերջին տարիներում աշխատանքի
շատ հետաքրքիր ու նոր ձևեր ստեղծվեցին:
Անցյալ տարի Էջմիածնի ու Հոկտեմբերյա-
նի շրջանների շատ կոլխոզներում բամբակի
բերքահավաքի օրերին սահմանվել էր «ա-
ռաջավոր չանաքավորին» մանդատը, որը
ձեռքից-ձեռք էր անցնում: Պատվավոր այդ
փաստաթուղթը նվաճելու համար օրը-օրին
աճում էր օրական 100 կիլոգրամ բամբակ
հավաքողների թիվը: Կոտայքի շրջանի Ավ-
դալար գյուղի կոլխոզում կազմակերպել
էին «պատվո գիրք» որի մեջ բրիգադների
առաջարկությամբ և կոլխոզի վարչության
որոշմամբ գրվում էր մրցության առաջա-
վորների անունները: Շատ տեղերում գո-
յություն ունեին բրիգադային և անհատա-



կան փոխանցիկ կարմիր դրոշներ, պատվո
տախտակներ և այլն: Ագիտատորը պետք է
օգտագործի այդ մեթոդները՝ մրցությունը
ավելի ու ավելի լայն ծավալելու համար:
Հսկայական կարևորություն ունի մրցու-
թյան առաջավորների փորձի ընդհանրացու-
մը: Հաճախ այդ կարևոր գործը սահմանա-
փակվում է առաջավորի ձեռք բերած հաջողու-
թյան մասին արված ընդհանուր ու կարճ
հաղորդումով, հրապարակվում է մի
քանի թիվ և ուրիշ ոչինչ: Այդ ձևով գոր-
ծը գլուխ չի գա: Այստեղ խիստ կարևոր
է այն, որ կոլխոզնիկները ոչ միայն իմա-
նան մրցության առաջավորի ձեռք բերած
հաջողության մասին, այլ նաև այն մասին,
թե ինչպիսի միջոցներով, աշխատանքի ինչ-
պիսի ձևեր գործադրելով ձեռք բերվեց
այդ հաջողությունը: Դա հնարավորու-
թյուն կտա մարդկանց՝ սովորելու առաջա-
վորից, հետևելու նրա օրինակին: Ագիտա-
տորը ինքը գործնական քայլերի պիտի դի-
մի առաջավորի աշխատանքի մեթոդները
մյուս կոլխոզնիկների մոտ արմատավորելու
համար: Այդ ճանապարհով ագիտատորը
պետք է ձգտի աշխատանքային ընդհանուր

վերելք ստեղծել ամբողջ բրիգադայում կամ օղակում։

Կոլխոզային գյուղը գտնվում է դաշտային աշխատանքների շատ պատասխանատու շրջանում։ Ձնային գարնան ուշ բացվելուն, ռեսպուբլիկայի կոլխոզները հաջողությամբ ավարտեցին հացահատիկի, բամբակի, շաքարի ճակնդեղի և կարտոֆիլի ցանքը։ Նշելով կոլխոզների ձեռք բերած այդ հաջողությունը, Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 21-րդ պլենումը կարևորագույն որոշումներ ընդունեց ցանքի մշակությունը օրինակելիորեն կազմակերպելու, բերքահավաքը նախապատրաստելու և առանց կորստի անցկացնելու համար։ Կենտկոմի պլենումը պարտիական ու կոմերիտական կազմակերպություններին պարտավորեցրեց՝ ցանքի «մշակման և բերքահավաքի աշխատանքների ժամանակաշրջանում ուժեղացնել ագիտացիոն-մասսայական աշխատանքը կոլխոզներում, բրիգադներում և օղակներում, լայնորեն ծավալել սոցիալիստական մրցությունը կոլխոզների, բրիգադների, օղակների և առանձին կոլխոզնիկների միջև, ՄՏ կայանների ու սովխոզների աշխատողների միջև՝ գյուղատնտեսական կուլտուրաների մշակումը բարձրորակ կատարելու, բերքահավաքը նախապատրաստելու և այն առանց կորստի անցկացնելու համար, ինչպես նաև պետական մթերումները և գյուղատնտեսական մթերքների մթերումները՝ ժամկետից շուտ կատարելու համար»։



Ինչպես տեսնում ենք, ՀԿ(բ)Պ Կենտկոմի պլենումը լուրջ խնդիրներ է դնում մեր ագիտատորների առջև՝ ցանքի մշակությունը և բերքահավաքը լավագույն ձևով անցկացնելու համար։ Պլենումի որոշումներից ամեն մի ագիտատոր իրեն համար անհրաժեշտ հետևություններ պիտի անի։ Եթե մինչև այժմ սոցիալիստական մրցությունը ընթանում էր գարնանացանը լավագույն ձևով կատարելու համար, ապա այժմ այդ մրցության հիմքում պետք է դրվի ցանքի մշակությունը, բերքահավաքի նախապատրաստումը և անցկացումը, ինչպես նաև պետական պարտավորությունների կատարումը։ Սոցիալիստական մրցությունը պետք է օգնի այդ խնդիրները լավագույն ձևով կատարելու համար։

Այժմ ագիտատորների գլխավոր խնդիրն է՝ պարտկազմակերպությունների ղեկավարությամբ սոցմրցության նոր պայմանագրեր կնքել բրիգադների, օղակների և

կոլխոզնիկների միջև, վերջիններիս հետ միասին մշակել նոր պարտավորություններ՝ ցանքի մշակության և բերքահավաքի նախապատրաստումն ու անցկացումը օրինակելիորեն կազմակերպելու համար:

Պատմական ու մեծագույն բերկրանքի օրեր է ապրում մեր ամբողջ երկիրը: Գերմանական զավթիչների դեմ տարած հաղթանակի և սկսված խաղաղ զարգացման ժամանակաշրջանի մասին ժողովրդին ուղղված ընկեր Ստալինի դիմումը հսկայական ոգևորություն և աշխատանքային եռանդ է ներշնչել սովետական երկրի աշխատավորներին: Դրա հետ միասին մեր ռեսպուբլիկայի աշխատավորները նախապատրաստվում են արժանի կերպով դիմավորելու Սովետական Հայաստանի 25-ամյակը, որի պատվին ծավալված սոցիալիստական մրցությունը օրեցօր ավելի լայն թափ է ստանում: Ագիտատորների խնդիրն է՝ ամեն կերպ խթանել այդ մրցությունը՝ գյուղատնտեսական աշխատանքների 1945 թվի պլանը լավագույն ձևով կատարելու համար:

Ա. ՊԵՏՐՈՍՅԱՆ

---



# ՌՈՒՍ ՀԱՆՃԱՐ Ա. Ս. ՊՈՊՈՎԸ

Գ. Գոլովին
կապի կենտրոնական թանգարանի դիրեկտոր

Ռադիոյի նշանավոր ստեղծող Ալեքսանդր Ստեպանովիչ Պոպովը պատկանում է տաղանդավոր այն մարդկանց շարքին, որոնք կազմում են ռուս ժողովրդի փառքն ու հպարտությունը: Նրա կյանքը իսկական գիտական սխրագործություն է՝ Հայրենիքին անշահախնդիր ծառայության և խորին նվիրվածության օրինակ:

Ա. Ս. Պոպովը ծնվել է Հյուսիսային Ուրալում 1859 թվի մարտի 16-ին, Վերխոտուրսկի գավառի Տուրինսկի հանքերի բանվորական ավանում: Ուսումնասեր տղան դեռ վաղ հասակից սկսեց տարվել տեխնիկայով, զարմանք պատճառելով տեղական պղնձաձուլարանի ինժեներներին իր խելացիությամբ: Հոր տան կողքով անցնող վտակի վրա Սաշա Պոպովը պատ-

նեչ կառուցեց և սարքեց ջրաղացի մի մոդել: Անիվների և ուժահաղորդ փոկերի սիստեմի միջոցով շարժվում էին մի քանի տասնյակ բազմապիսի մեքենաներ: Դրանց թվում կային և՛ փոքրիկ պոմպեր,՝ որոնք առվակից ջուրը փոխադրում էին փայտե նավղամների մեջ, և՛ հանքահորային ամեն տեսակ վերամբարձ մեքենաների բարդ մոդելներ՝ որոնք խոր փոսից հանում էին դեղին ավազը, և՛ օրիգինալ առագաստանավեր՝ որոնք լողում էին հատկապես նրանց համար մերձակայքում փորված ավազանում:

Պոպովը իր սկզբնական կրթությունը ստացել է Դոլմատովի հոգևոր ուսումնարանում և Պերմի սեմինարիայում: Նրա հայրը՝ Ստեփան Պետրովիչը, քահանա էր և միևնույն ժամանակ խոհուն մանկավարժ: Հայրը հասկանում էր որդու տեխնիկային նվիրվելու ձգտումը, բայց ոչնչով չէր կարող օգնել նրան:

Ստեփան Պետրովիչի եկամուտները հազիվ էին բավականանում մեծ ընտանիքի գոյությունը պահպանելու: Ուստի որոշվեց Սաշային առայժմ տեղավորել հոգևոր ուսումնարանում: Այնտեղ նա կարող



էր ձրիաբար առաջին փոքր հանրակրթական պատրաստությունը ստանալ:

Դոլմատովում Սաշան ապրեց ընդամենը երկու տարի և ապա փոխադրվեց Եկատերինբուրգ (ներկայումս Սվերդլովսկ), որտեղ ապրում էր նրա ավագ քույր Մ. Ս. Լևիցկայան: Պոպովի կյանքում առանձնապես անմոռանալի էր այն շրջանը, երբ նա ապրում էր Պերմում: 1873-ից մինչև 1877 թիվը նա սովորում էր Պերմի հոգևոր սեմինարիայում: Պոպովի սեմինարիական ընկերներից մեկը՝ Իժևսկին պատմում է, որ Սաշան պարապմունքներից ազատ ժամանակը սովորաբար միայնակ էր անցկացնում: Նա ագահաբար կարդում էր գրքեր, ինքն ուսումնասիրում էր ֆիզիկան և մաթեմատիկան:

Բայց ահա, 1877 թվի գարնանը նա ավարտում է սեմինարիայի չորս դասարանը: Ալեքսանդր Պոպովի ստացած վկայականի մեջ ասված է՝ «Մտնելով սեմինարիա 1873 թվին, այստեղ նա սովորում էր գերազանց ընդունակություններով, գերազանց վարքով»: Նա բոլոր առարկաներից, ներառյալ հունարեն, լատիներեն և ֆրանսե-

քեն լեզուները, նույնպես գերազանց թվա-
նշան ուներ: Մի՞թե դա փայլուն կարիերա չէր խոստանում ապագա քահանային: Սակայն Պոպովը վճռաբար հրաժարվում է հոգևոր կոչումից:

Հարց է ծագում՝ ո՞ւր գնալ հիմա: Իհարկե, համալսարան՝ Պետերբուրգի պանծալի համալսարանը, որը հրապուրում է այն ռուս պատանիներին, որոնք երազում են ապագայի ստեղծարար կյանքի մասին, Հայրենիքին անխոնջ ծառայելու մասին:

Բայց սեմինարիական կրթությամբ համալսարան չեն ընդունում: Մի նոր խոչընդո՛տ: Պոպովը հաղթահարում է վերջինս, էքստերն կարգով հիանալի քննություն բռնելով «հասունության վկայականի», այսինքն արական գիմնազիայի ութը դասարանի, և 1877 թվի աշնանը մտնում է Պետերբուրգի համալսարանի ֆիզիկա-մաթեմատիկական ֆակուլտետի առաջին կուրսը: Սկսվեց կարիքով և զրկանքներով լի մի կյանք:

Ալեքսանդր Ստեպանովիչը շատ անգամ փող չէր ունենում ուսման վարձը ժամանակին մուծելու համար: Նա ստիպված էր փող վաստակել մասնավոր դասեր տալով



ետ մնացող գիմնազիստներին, որպեսզի թեկուզ մի քիչ դրամական միջոցներ ձեռք բերի ապրուստի համար:

Համալսարանում Պոպովը համարվում էր ֆակուլտետի լավագույն ուսանողներից մեկը: Դեռևս 4-րդ կուրսում գտնվելիս, նա նշանակվեց ասիստենտ, որ համալսարանի պատմության մեջ հազվագյուտ մի դեպք էր: Սովորաբար այդ աշխատանքի համար ընտրում էին բարձրագույն ուսումնական հաստատությունն արդեն ավարտած երիտասարդ գիտնականներ:

Այդ տարիներին Ռուսաստանում ծնունդ էր առնում էլեկտրատեխնիկան, տեղի էին ունենում առաջին փորձերը էլեկտրական լուսավորության ասպարեզում: Էլեկտրականության գործնականորեն կիրառելու հարցերը շատ էին հետաքրքրում Ալեքսանդր Ստեպանովիչին: Պարապելով համալսարանում, նա սկսեց միաժամանակ աշխատել Պետերբուրգի առաջին էլեկտրակայաններից մեկում, որպես մոնտյոր: Նա մասնակցեց Նևսկի պրոսպեկտի էլեկտրական լուսավորության սարքավորմանը, Միխայլովսկի ձիամարզարանում կազմակերպված մի ցուցահանդեսի և այլն:

1882 թվին Պոպովը ավարտեց համալ-
սարանը և նրան թողին ֆիզիկայի ամբիո-
նի տրամադրության տակ: Նա պետք է
պատրաստվեր ինքնուրույն գիտական գոր-
ծունեության, բայց կյանքը այլ կերպ դա-
սավորվեց:

Համալսարանն ավարտելուց մի տարի
անց Ծովային գերատեսչությունը Պոպո-
վին առաջարկեց անցնել Կրոնշտադտի
սպայական Ականային դասարանը դասա-
տուի աշխատանքի: Այստեղ նա անցկացրեց
իր կյանքի 18 տարին: Ականային դասարա-
նի հարկի տակ Պոպովն ուսումնասիրում
էր էլեկտրամագնիսական ալիքները և հենց
այստեղ էլ նա հնարեց աշխարհի առաջին
ռադիոընդունիչը:

***

Ականային դասարանի պետ՝ առաջին
կարգի կապիտան Վերխովսկին սիրալիր
կերպով դիմավորեց նոր դասատուին: Նա
Պոպովի մասին լավ վկայություններ էր
լսել հայտնի մասնագետներից: Դեռ քիչ
առաջ կապիտանը ծանոթացել էր նույնիսկ
նրա առաջին գիտական հետազոտության
հետ՝ «Դինամո-էլեկտրական մեքենայի
ամենաարդյունավետ գործողության պայ-



մանները» վերնագրով: Վերխովսկու հա-
մար ոչ պակաս նշանակություն ունեին նաև
Պետերբուրգի համալսարանի գիտական
խորհրդի կողմից Պոպովի ներկայացրած
վկայությունը և ռուսական ֆիզիկայի ճա-
նաչված ղեկավար պրոֆեսոր Ֆ. Ֆ. Պետ-
րուշևսկու հիանալի հանձնարարականը:

Ականային դասարանում իր աշխատանքի
սկզբում, Ալեքսանդր Ստեպանովիչը էլեկ-
տրատեխնիկայի հատուկային դասատու
Ստեպանովի ասիստենտն էր: Պոպովը ղե-
կավարում էր գալվանիզմի ապարբերում
տեղի ունեցող գործնական պարապմունք-
ները և ֆիզիկական կաբինետի վարիչն էր,
իսկ 1888 թվին սկսեց կարդալ գործնական
ֆիզիկայի դասընթացը: Նրան միաժամա-
նակ հրավիրեցին ֆիզիկա և էլեկտրատեխ-
նիկա դասավանդելու Ծովային տեխնիկա-
կան ուսումնարանում, որը գտնվում էր
նույնպես Կրոնշտադտում:

Առավել հետաքրքրական այն ամե-
նը, ինչ կարդում էր երիտասարդ գիտնա-
կանը օտար գրականության մեջ, նա ձգտում
էր հաղորդել իր ունկնդիրներին: Ալեքսանդր
Ստեպանովիչը առանձնապես լուրջ ուշա-
դրություն էր նվիրում փորձերին, որոնք

Նա հանգամանորեն կշռադատության էր ենթարկում և նախապատրաստում էր ինքը անձամբ, համարյա բոլոր մանրամասնություններով: Փորձերի համար անհրաժեշտ գործիքները Պոպովը նույնպես ինքն էր շինում: Մանկության տարիներին իր ազգական Վ. Պ. Մրովցովի ղեկավարությամբ նա լավ էր յուրացրել ատաղձագործություն, տոկարային գործը և փականագործություն: Ալեքսանդր Ստեփանովիչը նաև հմուտ ապակեգործ էր: Նա շատ հաճախ հնարում էր չափազանց հետաքրքիր փորձեր և սրամիտ սարքեր:

Մասնագետ ծովայինների մեջ Ա. Ս. Պոպովը մեծ հեղինակություն էր վայելում: Ֆիզիկայի կամ էլեկտրատեխնիկայի ոչ մի լուրջ հարց չէր լուծվում առանց նրա հետ նախապես խորհրդակցելու: Խորհրդակցում էին, օրինակ, այնպիսի հարցի մասին, ինչպիսին է «կողքային հաղորդումը», — ծովայիններն այդպես էին անվանել այն ժամանակ նրանց համար անհասկանալի կարճ միացումը:

Ռազմանավերի վրա դրված առաջին էլեկտրասարքերը միալար էին: Որպես երկրորդ լար ծառայում էր նավի մե-



տաղե կորպուսը: Հասկանալի է, որ լարերի մեկուսացման թերությունները կարճ միացում էին առաջացնում: Սակայն ծովայինները իզուր էին փորձում պարզել «կողքային հաղորդման» պատճառները: Նրանցից նույնիսկ ամենափորձառուները որոշակի ոչ մի բան չէին կարող ասել այդ երևույթի մասին:

Նավատորմի համար հրատապ այդ հարցի ուսումնասիրությամբ զբաղվեց Պոպովը: Զբաղվելով էլեկտրական կայծեր առաջացնող պատճառների ուսումնասիրությամբ՝ Ալեքսանդր Ստեփանովիչը բախվեց այն ժամանակ քիչ ուսումնասիրված մի երևույթի՝ բարձր հաճախականության հոսանքի տատանումների: Երիտասարդ գիտնականը այնքան էր տարվել երևույթների այդ նոր բնագավառով, որ «կողքային հաղորդման» դեպքը սոսկ սկիզբը հանդիսացավ աշխատանքների այն նշանավոր շարանի համար, որոնք հետագայում հասցրին նրան անթել հեռագրի հայտնագործմանը:

***

Պոպովին ռադիոյի հայտնագործմանը հանգեցրեց՝ նրա նախորդ ամբողջ գիտա-

կան գործունեությունը: 1889 թվին նա հանդես է գալիս հետևյալ զեկուցումներով՝ «Նորագույն հետազոտությունները լույսի և էլեկտրական երևույթների հարաբերակցության մասին»: Պոպովը մի շարք տարիներ հետազոտություններ էր կատարում էլեկտրամագնիսային երևույթների բնագավառում և ավարտեց իր փորձերը 1895 թվին «ամպրոպանշիչի» գյուտով, որ առաջին ռադիոընդունիչն էր աշխարհում: Այդ գործիքի մեջ էլեկտրամագնիսային ալիքների ընդունումը արձանագրվում էր նրանով, որ մի մրճիկ խփում էր էլեկտրական զանգի զնգակիկին, ընդ որում կոհերերը (ապակե խողովակ մետաղե խարտվածքով) ավտոմատիկորեն ցնցվում և պատրաստ էր լինում ընդունելու էլեկտրամագնիսային նոր ալիք: Ալեքսանդր Ստեպանովիչը զգալի չափով կատարելագործեց կոհերերը, սակայն գործիքի զգայունությունը առանձնապես ուժեղացավ այն բանից հետո, երբ Պոպովը կիրառեց անտենա:

Ա. Ս. Պոպովը սոսկ կաբինետային գիտնական չէր: Նա նաև պրակտիկայի մարդ էր: Ահա թե ինչու նա ավելի ու ավելի համոզված հակվում էր այն մտքին, որ



էլեկտրամագնիսային ալիքները կարող են կապի միջոց դառնալ:

— Մարդկային օրգանիզմը,— ասում էր նա,— դեռ չունի զգացողության այնպիսի օրգան, որը փոխարիներ եթերում գտնվող էլեկտրամագնիսային ալիքները: Եթե հնարվեր այնպիսի մի գործիք, որը փոխարիներ էլեկտրամագնիսային զգացողությունները, ապա այդ գործիքը կարելի կլիներ գործադրել նաև ազդանշանները որոշ հեռավորության վրա հաղորդելու համար:

Եվ Պոպովը կառուցեց հենց այդպիսի մի գործիք, որի մասին երազում էր:

Աշխարհի առաջին ռադիոհաղորդումը Ա. Ս. Պոպովը պատրաստեց իր «ամպրոպանշիչը» հրապարակորեն ցուցադրելուց մի տարի անց: 1896 թվի մարտի 12-ին (24-ին), Ֆիզիկական կաբինետի լսարանում հավաքվեց մայրաքաղաքի ֆիզիկոսների ծաղիկը: Ռուսական ֆիզիկո-քիմիական ընկերության նախագահ Ֆ. Ֆ. Պետրուշևսկին խոսքը տվեց Ալեքսանդր Ստեպանովիչին՝

— Ձեր առջև դրված է էլեկտրամագնիսային ալիքների ընդունիչը: Ազդանշանները ավելի հարմար ընդունելու համար, նը

րան միացված է Մորզեի հեռագրային ապարատը: Ընդունող ապարատին, ինչպես տեսնում եք, միացված է չմեկուսացված պղնձե լար մոտ 2 միլիմետր տրամագծով: Հաղորդիչը դրված է 200 մետր հեռավորության վրա: Նրա մոտ ազդանշանի է սպասում իմ օգնական Պյոտր Նիկոլաևիչ Ռիբկինը,— Պոպովը ընկերության նախագահին հանձնեց Մորզեի այբուբենը պարունակող մի թերթիկ:— Ընդունվող ազդանշանները գրի կառնի Մորզեի ապարատը: Դուք բարի կլինեք հենց այս աղյուսակով վերծանել Մորզեի նշանները:

— Ես դրանք կգրեմ տախտակի վրա կավճով,—առաջարկեց Պետրուշևսկին:

Հաստատված լռության մեջ բոլորն էլ պարզորոշ լսեցին Մորզեի հեռագրական ապարատի խարսխի բնորոշ չխկոցը. Թղթի սպիտակ նեղ ժապավենը սկսեց շարժվել: Ռիբկինը սկսեց հեռագրել:

Պետրուշևսկին, մի կտոր կավիճ ձեռքին, մոտեցավ դասարանային սև գրատախտակին: Տախտակի վրա գրված ամեն մի նոր տառի հետ ավելանում էր ներկա գտնվողների հուզմունքը: Երբ, վերջապես, գրատախտակի վրա երևացին ռադիոյով հա-



ղորդված առաջին երկու խոսքերն աշխարհում, ի պատիվ Պոպովի օվացիա սարքեցին:

Ալեքսանդր Ստեպանովիչը ռադիոն հայտնագործելուց անմիջապես հետո աշխատում է անթել հեռագիրը գործնականորեն օգտագործել ռուսական նավատորմի նավերի վրա: 1897 թվին նա փորձեր է անում ռադիոկապ հաստատել Տանզունդյան ռեյդի վրա, խսկ 1898 թվի ամառվա կամպանիայի ժամանակ ռադիոկապ է հաստատված «Աֆրիկա» հածանավի ու «Եվրոպա» փոխադրանավի միջև: Այդ փորձերի մասին իր տված հաշվետվության մեջ գյուտարարը գրում է, որ «Օգոստոսի 21-ից մինչև . սեպտեմբերի 3-ը հաղորդվել է պաշտոնական 136 հեռագիր, չհաշված հեռագրերի ամենօրյա փոխանակությունը բացառապես անձնակազմի պրակտիկայի համար: Սեպտեմբերի 3-ի փոթորկի ժամանակ անթել հեռագիրը հաղորդակցության միակ միջոցն էր նավերի միջև, գործում էր միանգամայն անխափան և էական ծառայություններ մատուցեց հածանավի անձնակազմին...»:

Պոպովը դեռ 1898 թվին առաջարկել էր

նավատորմի նավերի վրա ռադիոհեռագրա-
յին ապարատ դնել մշտապես չհապաղե-
լու համար: Բայց միայն 1900 թվի գոգ-
լանդյան փայլուն ռադիոկապից հետո,—
երբ ռադիոն վճռական օգնություն ցույց
տվեց «գեներալ-ադմիրալ Ապրաքսին» զրա-
հանավը քարերի վրայից հանելու ուղղու-
թյամբ կատարվող փրկարար աշխատանք-
ների ժամանակ,— ծովային մինիստրու-
թյունը պաշտոնապես ճանաչեց կապի նոր
միջոցը:

Օտարերկրյա մի քանի գործարար շրջան-
ներ, հետաքրքրված լինելով Պոպովի աշ-
խատանքներով, ռուս գյուտարարին փող
էին առաջարկում և իրենց մոտ էին հրա-
վիրում աշխատանքի: Բայց Ալեքսանդր
Ստեպանովիչը, որպես իսկական հայրենա-
սեր, մերժեց բոլոր առաջարկները և մնաց
հայրենիքում:



1901 թվի ամառը Ա. Ս. Պոպովն անց-
կացրեց Սևաստոպոլում: Սևծովյան նավա-
տորմի նավերի վրա նա փորձարկում էր իր
նոր ռադիոկայանները: Մինչդեռ գյուտա-
րարը ավարտում էր իր փորձերը և պատ-
րաստվում էր տուն վերադառնալու, Պե-



տերբուրգում ծավալվեցին նրա համար
միանգամայն անակնկալ իրադարձություն-
ներ:

Էլեկտրատեխնիկական ինստիտուտում
բացվեց ֆիզիկայի պրոֆեսորի տեղ: Ինս-
տիտուտի դիրեկտոր Կաչալովը որոշեց այդ
պաշտոնի համար հրավիրել Ալեքսանդր
Ստեպանովիչին:

Պոպովի համար հեշտ բան չէր նավա-
տորմից բաժանվելը: Բայց նա իրեն մխի-
թարում էր այն հույսով, թե գտնվելով
ինստիտուտում, կկարողանա առաջվա նման
օգտակար լինել նաև ծովայիններին: Ահա
թե ինչու հետագայում, պատասխանելով
Կաչալովի պաշտոնական հարցումին, նա մի
անհրաժեշտ պայման առաջադրեց՝ իրեն
իրավունք վերապահել միաժամանակ ծա-
ռայության մեջ մնալու ծովային գերատես-
չությունում, որպեսզի կարողանա շարու-
նակել իր պարապմունքները ռուսական նա-
վատորմի նավերի վրա անթել հեռագրի
կազմակերպելու ասպարեզում՝ «որպեսի
հանձնարարությունը,— գրում է Պոպովը,
—ես իմ բարոյական պարտականությունն
եմ համարում հասցնել մինչև վախճանը»:

Էլեկտրատեխնիկական ինստիտուտում Պո-

ցովը արագորեն հեղինակություն նվաճեց և համարվում էր լավագույն պրոֆեսորներից մեկը: Նա ոչ միայն իր դասախոսությունների պահին շփվում էր ուսանողների հետ, այլև հաճախ այցելում էր նրանց ֆիզիկական լաբորատորիայում տեղի ունեցող գործնական պարապմունքների ժամանակ:

Պոպովը ոչ պակաս պարզ և համեստ մարդ էր նաև անձնական կյանքում: Նա չէր ծխում, գինի չէր խմում, սովորաբար պարզ էր հագնվում, իսկ ազատ ժամանակ սիրում էր հետաքրքիր գրքեր կարդալ, տարվում էր ձկնորսությամբ, սիրում էր երաժշտություն:

Եթե Պոպովի աշխատանքում որևէ բան չէր հաջողվում, նա աշխատում էր դժվարությունը ցույց չտալ և տաքնելիս չէր բարձրացնում ձայնը:

***

1905 թվի սեպտեմբերի 26-ին պրոֆեսորների խորհուրդը միաձայն ինստիտուտի դիրեկտոր ընտրեց Ալեքսանդր Ստեփանովիչ Պոպովին: Այժմ նրա բազմաթիվ գիտական աշխատանքներին ավելացան նոր, զուտ վարչական պարտականություններ:

Պոպովի համար վրա հասան ծանր օրեր.



Նա առանց բացահայտորեն պաշտպանելու ռևոլյուցիոն տրամադրություններով տոգորված ուսանողությանը, այնուհանդերձ աշխատում էր հակահարված տալ նաև ցարական կառավարության կողմից բարձրագույն ուսանողական հաստատությունների վրա ճնշում գործադրելու փորձերին:

Դիրեկտորից պահանջեցին, որ նա ինստիտուտում թողնի ոստիկանական գաղտնի գործակալներին՝ ուսանողների վրա հսկելու համար: Ալեքսանդր Ստեփանովիչը կտրականապես մերժեց: Պոպովը իր կյանքում առաջին անգամ դավաճանեց իր սովորական հավասարակշռությանը և խիստ պատասխան տվեց:

Ներքին գործերի մինիստրությունից ուղարկված մի հրավեր ճակատագրական հանդիսացավ գյուտարարի համար: Տուն վերադառնալով, նա ուժեղ տկարություն զգաց և անկողին մտավ: 1906 թվի հունվարի 12-ին, երեկոյան ժամը 5-ին, Պոպովը վախճանվեց ուղեղի արյունահոսությունից: Նա ընդամենը 48 տարեկան էր:

Ռադիոյի գյուտարարի հիշատակը խնամքով է պահպանում սովետական ժողովուրդը: Ա. Ս. Պոպովի անունն է կրում

Բալթիական նավատորմի կապի դպրոցը Կրոնշտադտում: Այդ անունն է տվել Տուրինյան հանքերի ռադիոհանգույցին, Լենինգրադի էլեկտրատեխնիկական ինստիտուտի լաբորատորիաներից մեկին: Ինստիտուտի այն տան պատին, որտեղ ապրել, աշխատել և վախճանվել է Պոպովը, խփված է մի հուշատախտակ: Կապի կենտրոնական ինստիտուտում հավաքված են այն գործիքներն ու ապարատները, որոնք իր ձեռքով շինել է Ալեքսանդր Ստեպանովիչը: Սակայն ռադիոյի գյուտարարի համար լավագույն հուշարձանն է նրա սիրելի զավակ ռադիոյի իսկական զարգացումը:

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո, մեր երկրում ստեղծվեց սովետական ռադիոարդյունաբերություն, կառուցվեցին հարյուրավոր ռադիոհաղորդակայաններ: Հայրենական պատերազմի ճակատներում, ռադիոն հանդիսանում էր կապի հիմնական և վստահելի միջոցներից մեկը: Պոպովի աշխատանքը իսկական գնահատություն ստացավ:

---



«Ռևոլյուցիոն նոր վերելքի տարիներին (1912—1914) բոլշևիկների պարտիան ղեկավարեց բանվորական շարժումը և այդ շարժումը բոլշևիկյան լոզունգների տակ տարավ դեպի նոր ռևոլյուցիա»:

«ՀամԿ(բ)Կ պատմության համառոտ դասընթաց»:

# ՀԱՄԿ(Բ)Պ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ԴԱՍԸՆԹԱՑՆ ՈՒՍՈՒՄՆԱՍԻՐՈՂՆԵՐԻՆ ՕԳՆՈՂ ՀԻՄՆԱԿԱՆ ՍԿԶԲՆԱՂԲՅՈՒՐՆԵՐԻ ԳՐԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՑՈՒՑԱԿ*)

## ԳԼՈՒԽ V

## ԲՈԼՇԵՎԻԿՆԵՐԻ ՊԱՐՏԻԱՆ ԲԱՆՎՈՐԱԿԱՆ ՇԱՐԺՄԱՆ ՎԵՐԵԼՔԻ ՏԱՐԻՆԵՐԻՆ՝ ԱՌԱՋԻՆ ԻՄՊԵՐԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՊԱՏԵՐԱԶՄԻՑ ԱՌԱՋ (1912—1914 ԹՎԱԿԱՆՆԵՐԸ)

### 1. Ռևոլյուցիոն շարժման վերելքը 1912—1914 թվականներին

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Դեմոնստրացիաների սկիզբը: 1910. Լենին և Ստալին— «Լենայի դեպքերի մասին» գրքում. էջ

*) Սկիզբը տես «Ա. Բ.» № 16-ում, 1944 թ.:

3—8։ Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ., 1939, 65 էջ։

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռևոլուցիոն վերելք։ 1912. Լենին և Ստալին— «Լենայի դեպքերի մասին» գրքում. էջ 39—49։ Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ., 1939, 65 էջ։

ЛЕНИН В. И. — Развитие революционной стачки и уличных демонстраций. 1913. Соч. т. XVI стр. 240—245.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռևոլուցիոն պրոլետարիատի մայովկան։ 1913. Լենին և Ստալին— «Լենայի դեպքերի մասին» ժողովածուի մեջ. էջ 50—62։ Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ., 1939, 65 էջ։

ЛЕНИН В. И. — Резолюции совещания Центрального Комитета РСДРП с партийными работниками. 1913. Соч. т. XVI, стр. 223—235.

ЛЕНИН В. И. — Резолюции летнего 1913 года (Поронинского) совещания ЦК РСДРП с партийными работниками. Соч., т. XVII, стр. 1—14.

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Տեղից շարժվեց... Լենին



և Ստալին— «Լենայի դեպքերի մասին» ժողովածուի մեջ. էջ 24—26։ Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ., 1939, 65 էջ։

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— 1912 թվականի մայիսմեկյան թերթիկը։ Լենին և Ստալին —«Լենայի դեպքերի մասին» ժողովածուի մեջ. էջ 32—38։ Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ., 1939, 65 էջ։

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Հոդվածներ «Звезда» լրագրից. ապրիլ—մայիս 1912 թ.։ Լենին և Ստալին— «Լենայի դեպքերի մասին» ժողովածուի մեջ. էջ 19—22, 27—31։ Պետհրատ, Քաղ. գրակ. հրատ., 1939, 65 էջ։

### 2. Բոլշևիկյան «Правда» լրագիրը։ Բոլշևիկյան ֆրակցիան IV Պետական դումայում

ЛЕНИН В. И. — Итоги полугодовой работы. 1912 г. Соч., т. XVI, стр. 45—55.

ЛЕНИН В. И. — Рабочий класс и рабочая печать. 1914 г. Соч., т. XVII, стр. 417—423.

ЛЕНИН В. И. — Об избирательной кампании и избирательной платформе. 1911. Соч., т. XV, стр. 244—250.

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Քաղաքական պարտիաները Ռուսաստանում: 1912. Ընտիր երկեր երկու հատորում. հտ. I, էջ 827—838:*

ЛЕНИН В. И.—Итоги выборов. 1913. Соч., т. XVI, стр. 256—275.

ЛЕНИН В. И. — Материалы к вопросу о борьбе внутри с.-д. думской фракции. 1913 г. Соч., т. XVII, стр. 43—56.

*ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ռուսաստանի բանվորական մամուլի անցյալից: 1914. Ընտիր երկեր վեց հատորի մեջ. հտ. VI, մաս I, էջ 58—66:*

ЛЕНИН В. И. — Редакции газеты «Правда» в Петербург. (Два письма). 1912 г. Соч., т. XXIX, стр. 76—79.

ЛЕНИН В. И. — И. В. Сталину в Петербург, 1912. Соч., т. XXIX, стр. 82—84.

СТАЛИН И. В. — Наказ петербургских рабочих своему рабочему депутату. 1912 г. В книге: ВКП(б) в резолюциях с'ездов, конференций и пленумов ЦК, часть I, стр. 677—678. Госполитиздат, 1940, 728 стр.



СТАЛИН И. В. — Выборы в Петербурге. (Письмо из СПБ). 1912 г. В сборнике: Пражская конференция РСДРП 1912 года. Статьи и документы, стр. 212—221. Партиздат. 1937. 248 стр.

СТАЛИН И. В. — К итогам выборов по рабочей курии Петербурга. 1912 г. В сборнике: Большевистская фракция IV государственной думы, стр .32—35. Соцэкгиз. 1938, 632 стр.

СТАЛИН И. В. — Положение в с.-д. фракции, 1943 г. В сборнике: Большевистская фракция IV Государственной думы, стр. 44—46. Соцэкгиз. 1938. 632 стр.

*ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— «*Правда*»-յի տասնամյակի շուրջը: (Հուշեր): Լենին և Ստալին— «Լենայի դեպքերի մասին» գրքում. էջ 63—64: Պետհրատ, քաղ. գրակ. հրատ., 1939, 65 էջ:*

### 3. Բոլշևիկների հաղթանակը լեգալ կազմակերպություններում: Ռևոլյուցիոն շարժման հետագա աճումը: Իմպերիալիստական պատերազմի նախօրյակը:

ЛЕНИН В. И.— Жизнь учит. 1913. Соч., т. XVI, стр. 279—280.

ЛЕНИН В. И. — О формах рабочего движения. (Локаут и марксистская тактика). 1914 г. Соч., т. XVII, стр. 303—305.

ЛЕНИН В. И. — О национальной программе РСДРП. 1913 г. Соч., т. XVII, стр. 116—121.

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Քննադատական ակնարկներ ազգային հարցի մասին: 1913. Լենին— «Ազգային հարց» ժողովածուի մեջ: Պետհրատ, 1926, 404 էջ:

ԼԵՆԻՆ Վ. Ի.— Ազգերի ինքնորոշման իրավունքի մասին: 1914. Ընտիր երկեր երկու հատորում, հտ. I, էջ 856—915:

ЛЕНИН В. И. — Приемы борьбы буржуазной интеллигенции против рабочих, 1914 г. Соч., т. XVII, стр. 481—505.



ԼԵՆԻՆ Վ. Ի.— Օբեկտիվ տվյալներ բանվորական շարժման զանազան հոսանքների ուժի մասին: 1914. Ընտիր երկեր երկու հատորում, հտ. I, էջ 916—922:

ԼԵՆԻՆ Վ. Ի.—Մարքսիզմ և ռեֆորմիզմ, 1913: Լենին և Ստալին— Ընտիր երկեր մի հատորի մեջ. էջ 266—270: Պարտհրատ., 1937, 1187 էջ:

ՍՏԱԼԻՆ Ի. Վ.— Մարքսիզմը և ազգային հարցը: 1913: Ի. Ստալինի «Մարքսիզմը և ազգային-գաղութային հարցը» գրքում. էջ 9—75: Պետհրատ., Քաղ. գրակ. հրատ., 1938, 360 էջ:

Իոսիֆ Վիսսարիոնովիչ Ստալին: Համառոտ կենսագրությունը: Հրատ. ՀամԿ(բ)Պ ԿԿ-ին կից Մարքսի—Էնգելսի—Լենինի ինստիտուտ: Երևան, Քաղ. գրակ. պետ. հրատ., 1940 թ., 110 էջ:

---

